Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ-ի ՀԱՎԵԼՎԱԾ

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՐՈՍ

# ՄԱՐԻԱՄ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԻ

# ՓՈՐՁԸ



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ, 1947

Սոցիալիստական Աշխատանքի Հերոս .
ՄԱՐԻԱՄ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ



Սոցիալիստական հողագործության նովատորները գրանք կոլխոզային գյուղի անվանի մարդիկն են, որոնք պայքարում են կայուն բերքի համար, որոնք հողի կոլեկտիվ մշակումը, ագրոտեխնիկայի կիրառումը խարսխում են պրակտիկայի հարուստ փորձի վրա։ Այդպիսիներից է Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանը, 22-ամյա վառվռուն կոմերիտուհին։

Հեշտ չի եղել Մարիամ Մարտիրոսյանի համար այդպիսի բարձր կոչման արժանանալը։ Դա նրանից պահանջել է ուժերի լարում, երկար ու քրտնաջան աշխատանք։ Նա միշտ ձգտել է լավագույններին նմանվել, անվերջ առաջ գնալ՝ ընդհանուր վերելք ստեղծելու համար։ Իր մասին նա ասում է, որ ինքը իրեն նպատակ է դրել նմանվել Մարիա Դեմչենկոյին։

Ամեն մեկն ունի աշխատանքի իր ոճը։ Մարիամ Մարտիրոսյանի աշխատանքի ոճը յուրօրինակ է և շատ ուսանելի։ Նա ունի աշխատանքի կազմակերպման մեծ շնորհք, խստապահանջ է դեպի իր օղակի անդամները, համառ է ու աշխատասեր՝ իր նպատակին հասնելու համար և աներեր՝ հաղթահարելու համար ամեն մի դժվարություն։

Այդպիսի ոճով աշխատելու շնորհիվ է, որ նա իր օղակի 9 անդամների հետ միասին 10 հեկտար հողամասի յուրաքանչյուր հեկտարից 39,5 ցենտներ ցորեն ստացավ։



Բարձր բերք ստանալու ցանկությունը դեռ բավական չէ։ Պետք է գիտենալ, թե ինչպես ստանալ այն։ Անհրաժեշտ է լավ իմանալ հողի մշակման կանոնները։

Բերքատվության բարձրացման գործում բացառիկ է ցանքաշրջանառության դերը։ Ճիշտ ցանքաշրջանառությունն ապահովում է հողի բերրիության հետևողականորեն բարձրացումը, ապահովում է պայքարը մոլախոտերի, վնասատուների, հիվանդությունների դեմ, ապահովում է անասուններին անհրաժեշտ քանակությամբ խոտով։ Այդ տեսակետից Մարիամ Մարտիրոսյանը շատ բարձր է գնահատում ցանքաշրջանառությունը։ Նա իր օղակի հողամասում հետևողականորեն կիրառում է կոլխոզի համար սահմանված 8-դաշտյան ցանքաշրջանառությամբ նախատեսված կուլտուրաների հաջորդականությունը։

Ի՞նչ է արված նրա օղակում այդ ուղղությամբ։

Մարիամ Մարտիրոսյանի օղակի տասը հեկտար հողամասում 1943 թվականին ցանված է եղել աշնանացան ցորեն։

1944 թվականին՝ գարնանացան ցորեն։

1944 թվականի աշնանը այդ հողամասում կատարվել է սև ցել։

1945 թվականին՝ ցել։

1945 թվականի աշնանը ցանել են աշնանացան ցորեն, որից 1946 թվականին նրանք ստացան ամենաբարձր բերքը Ռեսպուբլիկայում։

Հետևենք, թե ինչպե՞ս է Մարիամ Մարտիրոսյանի օղակը հաջորդականորեն մշակում հողը։ Այդ մեզ հնարավորություն կտա հասկանալու, թե ինչո՞ւմն է «գաղտնիքը», որ նրա օղակը ամենաբարձր բերքն ստացավ Ռեսպուբլիկայում։

Նախ և առաջ նշենք, որ Մարիամ Մարտիրոսյանի օղակին ամրացված հողամասը իր բնույթով մեկն է այն հողամասերից, որ մշակում են նրա հարևան օղակ-



ները, բրիգադաները, հարևան կոլխոզները։ Դա շագանակագույն, միջին ավազա-կավային, թույլ քարքարոտ, միջին հզորության, անջրդի հողամաս է՝ հարավարևմտյան թեքությամբ։

## ՀՈՂԻ ՄՇԱԿՈՒՄԸ

Ցանքաշրջանառության համաձայն, աշնանացան ցորենը ցանվում է ցելի վրա։ Քաջ գիտենալով սև ցելի առավելությունները, Մարիամ Մարտիրոսյանը սովորական վաղ ցելի փոխարեն իր հողամասում 1944 թվականի գարնանացան ցորենի հնձից հետո աշնանը կատարեց սև ցել։

Նախքան հողամասը վարելը, նա իր օղակի անդամների հետ միասին հավաքեց հողամասի քարերը և փոխանակ կույտեր անելու հողամասում, ինչպես այդ անում են շրջանի շատ կոլխոզներում, քարերը դուրս տարավ հողամասից։ Հողամասի մեջ բացվեցին խամ տեղեր, միջնակներ, որոնց խամ հողը նրանք շաղ տվեցին հողամասի վրա։

Այնուհետև ՍՏԶ-ՆԱՏԻ տրակտորով վարեցին հողամասը։ Տրակտորով վարեցին միայն 7 հեկտարը, որովհետև մնացած 3 հեկտարը հողի նվազ հզորության և քարքարոտության պատճառով անհարմար էր տրակտորով վարելու համար։ Երեք հեկտարը վարեցին եզան գութանով։

Բարձր բերք ստանալու համար շատ կարևոր է վարի որակը։ Մարիամ Մարտիրոսյանը վարի ամբողջ ընթացքում, որը տևեց 3 օր (նոյեմբերի 17-ից մինչև 20-ը), դաշտից չէր բացակայում, հսկելով վարի խորությանը և այն բանին, որ դաշտում չմնան խամ տեղեր (խարակներ)։ Այդ գործը Մարիամը լավ գիտեր։ Չէ՞ որ նա ինքն էլ տրակտորիստ է, ավարտել է Երևանի Գյուղմեխանիզացիայի դպրոցը։ Նրա պահանջով վարը կատարվեց 24—26 սանտիմետր խորությամբ՝ տրակտորով, 20—22 սանտիմետր՝ գութանով։

Այսպիսով, վարի որակն ապահովված էր, հիմք էր

դրված հաջորդ տարվա բարձր բերքին։ Բայց դա բոլորը չէր։ Դա լավ գործի միայն լավ սկիզբն էր։ Սկսվում է համառ, քրտնաջան աշխատանքի շրջանը՝ սև ցելի մշակությունը, որը պետք է բազմապատկեր հետագա հաջողությունները, ապահովեր բարձր բերք ստանալը։

## ՑԵԼԻ ՄՇԱԿՈՒԹՅՈՒՆԸ

1945 թվականի գարունն է։ Հաղթանակի գարունը։ Մարիամի խանդավառ կոմերիտական հոգին տենչում է ստանալ հաղթանակին վայել բերք։ Սկսվում է համառ պայքար հողի հետ, պայքար, որը պետք է հողին ստիպեր բարձր բերք տալ։

Գարունը բացվելուն պես, երբ հնարավորություն ստեղծվեց դաշտ դուրս գալու, Մարիամի օղակն սկսեց փոցխել ցելը, որի շնորհիվ ցելի մակերեսը լավ հարթվեց և ստեղծվեց հողի փուխր շերտ, որն ապահովում է հողի մեջ ձմռան ընթացքում կուտակված խոնավության պահպանումը։

Մայիսի 5-ին, երբ գարնանային անձրևներից հետո երևացին մոլախոտերը և երբ հողի երեսը զգալիորեն կեղևակալել էր, ՍՏԶ տրակտորով կատարվեց կրկնավար՝ 16-18 սանտիմետր խորությամբ։ Նախքան կրկնավարը հողի երեսը դուրս եկած քարերը դաշտից հեռացրին և ապա կատարեցին հողի պարարտացում խառն աղբով։ Հետո դաշտ տեղափոխեցին 200 սայլ խառն աղբ, որը հավասարապես փռեցին ամբողջ հողամասի վրա։ Որպեսզի աղբը հավասար փռվեր, այն կատարեցին այսպես. հողամասը բաժանեցին հավասար երկայնակի շերտերի և յուրաքանչյուր շերտի վրա գոգնոցներով, դույլերով, բահով շաղ տվին խառն աղբը։ Որակով կատարված կրկնավարն ապահովեց ծլած մոլախոտերի ոչնչացումը և պարարտանյութի խառնումը հողին։

Որովհետև ցելի մեջ խոնավություն կուտակելը շատ կարևոր է, այդ պատճառով կրկնավարի ընթացքում



միաժամանակ կատարեցին փոցխում՝ զիգզագ փոցխով, փոցխը կցելով գութանին։

Անցան օրեր։ Հողի մեջ դեռ մնացած մոլախոտերի սերմերն սկսեցին ծլել, որին զգալի չափով նպաստել էին տևական անձրևները։ Անհրաժեշտ էր ուժեղ պայքար մղել մոլախոտերի դեմ, քանի որ նրանք մեծ չափով կլանում են հողի խոնավությունը, վերցնում անհրաժեշտ սննդանյութերը, դրանով իսկ նվազեցնելով բերքը։

Մոլախոտերի ոչնչացման լավագույն միջոցը ցելի կուլտիվացիան է, որը և կատարեցին նրանք երկու անգամ՝ հունիսի 8-ին և հուլիսի 17-ին։ Երկու դեպքումն էլ կուլտիվացիան կատարվեց 12 թաթանի տրակտորային կուլտիվատորի միջոցով՝ 6—8 սանտիմետր խորությամբ։ Յուրաքանչյուր անգամ կուլտիվացիային հաջորդում էր փոցխումը։ Ցելի նման մշակումը բավականաչափ մաքրեց հողը մոլախոտերից։

## ՀՈՂԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ ՑԱՆՔԻՆ

Բարձր բերք ստանալու համար շատ կարևոր նշանակություն ունի ցանքի ճիշտ ժամկետի ընտրությունը։ Աշնանացանն ուշ կատարելու դեպքում չի ապահովվում ցորենի թփակալումն ու արմատակալումը մինչ աշնանը, որի հետևանքով հաճախ տեղի է ունենում աշնանացանի ցրտահարում, մանավանդ երբ ձյան ծածկոցը բարակ է լինում և ձմեռը՝ ցրտաշունչ։ Այդ բանը լավ հասկանալով, Մարիամը մեծ տեղ էր տալիս ցանքի ժամկետի ընտրությանը։

Բայց ցանքից առաջ հողը հարկավոր էր լավ նախապատրաստել։ Որովհետև այդ ժամանակ հողամասի վրա կային որոշ չափով մոլախոտեր և հողի մակերեսային շերտը փոքր ինչ ամրացել էր, ուստի նրանք կատարեցին հողամասի նախացանքային մշակություն՝ տրակտորային մակերեսային վար 8—10 սանտիմետր խորությամբ, այն դարձյալ զուգակցելով փոցխման հետ։

Հողը պատրաստ էր իր մեջ ընդունելու սերմացուն, նա հասունացել էր։ Մնում էր պատրաստել սերմացուն։

## ՍԵՐՄԱՑՈՒԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ

«Ինչ՞ ցանես, այն կհնձես»—ասում է ժողովրդական առածը։ Այդ լավ գիտեր Մարիամը։ Այդ բանը հաճախ էր լսել նա իրենց գյուղի ծերերից, իր հորից, ուստի նա իր ձեռքը վերցրեց սերմացուի նախապատրաստման կարևոր գործը։ Երբ բրիգադիր ընկ. Բ. Կարապետյանը կոլխոզից ստացավ սերմացուն, Մարիամը վերցրեց իր բաժինը՝ 10 հեկտարի համար։ Սերմացուն կոլխոզում մշակվող աշնանացան ցորենի «ստեպնյաչկա» սորտն էր։ Բուդյոննու անվան կոլխոզում, ինչպես նաև հարևան կոլխոզներում, այդ սերմացուն տեղական պայմաններում լավ բերք է տալիս։

Սերմացուն ստանալուց անմիջապես հետո օղակը ձեռնամուխ եղավ նրա զտմանը։ Զտիչ մեքենայով (տրիեր) անցկացնելուց հետո, սերմացուն մեծ չափով մաքրվեց մոլախոտերի սերմերից և նվաղ ու ջարդված հատիկներից։

Բայց այդ դեռ չէր բավարարում Մարիամին. նա ձգտում էր սերմացուն դարձնել լիարժեք, այնպես որ հողի մեջ դցած յուրաքանչյուր հատիկը ծլեր։ Այդ պատճառով էլ նա կատարեց երկրորդ զտում, և դեռ դրանով էլ չբավականանալով, սկսեց կազմակերպել սերմացուի հատընտիր զտումը։

Որպեսզի համոզվեր, որ սերմացուն բարձրորակ և լիարժեք է, Մարիամը կոլխոզի ագրոտեխնիկ Արամայիս Անտոնյանի հետ միասին կատարեց սերմի ծլունակության ստուգում, որը տվեց հրաշալի արդյունք և փարատեց Մարիամի աննշան կասկածներն անգամ սերմացուի որակի նկատմամբ։ Սերմացուն գերազանց որակի էր։ Այդ հաստատեցին նաև սերմ ստուգող շրջանային լաբորատորիայի տվյալները։ Սերմացուն գերազանցում էր կոնդիցիայի տեսակետից սահմանված բոլոր նորմաները։



Բայց դա դեռ բոլորը չէր, կար մի ճեղք, որտեղից վտանգ կարելի էր սպասել բարձր բերք ստանալու համար—դա հիվանդություններով վարակվելու վտանգն էր։ Եվ ահա Մարիամի օղակը կատարում է սերմացուի թաց ախտահանում ֆորմալինով և այն էլ որակով, այնպես, որ յուրաքանչյուր հատիկ զերծ մնա վարակից։

Երբ օղակի մյուս անդամները պարկերի մեջ էին լցնում ախտահանված սերմացուն, Մարիամն արդեն դաշտում ստուգում էր, թե շարքացանը պատրա՞ստ է ցանքի համար։ Ամեն ինչ կարգին էր։

## ՑԱՆՔԸ

Հողը պատրաստ էր, պատրաստ էր սերմացուն, պատրաստ էր շարքացանը, կազմ ու պատրաստ էին և խանդավառ կոմերիտականները։

Մարիամի համար սկսվում է հուզումնալից մի շրջան։ Նա մի պահ հիշեց, որ խոստացել է բարձր բերք ստանալ՝ հեկտարից 200 փութ, հիշեց Օֆիկ Մադոյանին, որի հետ մրցման մեջ էր մտել, հիշեց, որ երկրին շատ հաց է պետք։ Նրա աչքերի առջև կինոժապավենի նման անցան շատ բաներ։ Նրա դեմքը վարդագույն շղարշով էր պատվել, նա բերկրանք էր ապրում։

Սկսում են ցանքը։ Մարիամն ինքն իրեն մրմնջում էր— «Մեկ ցանեմ, որ հազար բուսնի»։

Ցանքը կատարվեց տրակտորային շարքացանով սեպտեմբերի 5-ին։ Յուրաքանչյուր հեկտար հողամասում ցանվեց 170 կիլոգրամ սերմ։ Ցանքի ընթացքում Մարիամը հաճախ ստուգում էր՝ արդյոք շարքացանի բոլոր սերմատարները հավասա՞ր չափով են թողնում սերմացուն հողի մեջ, հավասա՞ր խորությամբ։

Սերմացուն հավասարապես էր ցանվում, այդ բավարարում էր խստապահանջ Մարիամին։

Սկսվում է մի նոր շրջան։

Մարիամը հաճախ այցելում է իր արտը։ Նա սպասում էր և այն էլ սրտատրոփ... Սպասում էր առաջին ծիլերին։ Նրան նույնիսկ շատ երկար թվացին այդ սպասման օրերը, մինչ որ մի գեղեցիկ առավոտ նա հողի երեսին նկատեց ծիլերը։ Ցանքի տասներորդ օրը, չնայած անձրևների բացակայությանը, հողի լավ մշակման շնորհիվ, նրա մեջ կուտակված խոնավության շնորհիվ սերմերը ծլեցին։ Չկար նրա համար ավելի բերկրալի օր, քան այդ օրը։ Նա շոյված էր զգում իրեն։

Օրըստօրե ծիլերը բարձրանում էին, դաշտին կանաչ գույն տալով։

—Առատ բերք կտա դաշտը,— մտածում էր Մարիամը,—ես դրա համար շատ բան եմ արել։

Օրեցօր ամրանում և թփակալում էր ցորենը։

Սկսվեցին ցրտերը։ Եկավ առաջին ձյունը, որը ծածկեց և պատսպարիչ սավանի նման իր տակն առավ աշնանացանը։

## ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱՅԻ ԽՄԲԱԿԸ

Ձմռան ընթացքում կոլխոզում կազմակերպվեց ագրոխմբակ, որտեղ բոլոր բարձր բերքի օղակների անդամները ծանոթանում էին հողի մշակման կանոններին։ Այդ խմբակի ակտիվ մասնակիցն էր նաև Մարիամ Մարտիրոսյանը՝ իր օղակի անդամներով։ Պարապմունքների ժամանակ նա պատմում էր իր փորձի մասին։ Խմբակի հետ պարապում էր կոլխոզի փորձառու ագրոտեխնիկ Արամայիս Անտոնյանը։

Ագրոխմբակում օղակի անդամները բավականին լիցք ստացան և պատրաստվեցին գարնանային աշխատանքներն սկսելու համար։

## ՑԱՆՔԻ ՄՇԱԿՈՒՄԸ

1946 թվականի գարունն է։

Երբ ձյունը հալվեց և դաշտերը բացվեցին, Մարիամն անմիջապես ստուգեց իր դաշտը։ Աշնանացանը



լավ վիճակում էր, ցրտահարված կամ նեխած տեղեր չկային։ Դա մեծ ուրախություն պատճառեց Մարիամին և նա սկսեց ծրագրել իր հետագա աշխատանքը։ Անհրաժեշտ էր ժամանակին կատարել աշնանացանի փոցխումը, սնուցումը, քաղհանը, որոնք պետք է ապահովեին ապագա բարձր բերքը։

Երբ հողի երեսն այնքան չորացավ, որ հնարավոր դարձավ դաշտ դուրս գալ, Մարիամն իր օղակով ձեռնամուխ եղավ աշնանացանի փոցխմանը։ Դա ապրիլի 10-ին էր։ Նախքան փոցխումը, օղակը ցանքերի սնուցման համար դաշտ էր փոխադրել մոտ 60 սայլ խառնաղբ, որը հավասարաչափ շաղ տվեցին ցանքի վրա։ Դա շատ կարևոր ձեռնարկում էր։

Փոցխելու շնորհիվ փխրեցվում է հողի կեղևակալած շերտը ու հնարավորություն է ստեղծվում օդի թափանցման համար դեպի ցորենի արմատները և միևնույն ժամանակ կանխվում է ջրի անտեղի գոլորշիացումը հողից, որն անջրդի պայմաններում բացառիկ նշանակություն ունի հացահատիկի հետագա զարգացման համար։

Մի քանի օրից հետո փոցխելու արդյունքն ակնառու դարձավ։ Աշնանացանը փարթամացավ և մուգ կանաչ գույն ստացավ։ Առավոտյան ցողապատ աշնանացանը մարգարտի փայլով ժպտում էր նայողին։ Ցանքն օր-օրի վրա աճում էր, փարթամանում։ Բայց հողի մի քանի փոքրիկ հատվածներում ցանքի աճումը հետ էր մնում, որը խիստ մտատանջություն էր պատճառում Մարիամին։ Անհրաժեշտ էր միջոցներ ձեռք առնել այդ բացը շտկելու համար, և նա այդ խնդիրը լուծեց վարպետորեն։ Նրանք տակառներով դաշտ փոխադրեցին գոմաղբի հեղուկ և հողի փոքրիկ հատվածները ցողեցին դրանով (ավելների միջոցով)։ Այդ կատարվեց մեկ օրում, մայիսի 20-ին։

Տեղացող անձրևներից հետո աշնանացանն սկսեց

արագորեն աճել, բայց դրա հետ միասին աճում էին հողի մեջ մնացած մոլախոտերը։

Սկսվեց պայքարը մոլախոտերի դեմ։ Հունիսի 5-ին օղակը կատարեց առաջին քաղհանը։ Օղակի անդամները, մրցելով իրար հետ, դաշտի առանձին հատվածներ էին վերցրել քաղհանելու համար։ Քաղհանած մոլախոտերը հեռացնում էին դաշտից։

Դաշտը մաքրվեց մոլախոտերից, բայց օղակը նախատեսում էր, որ մոլախոտերը կարող են նորից երևան գալ։ Եվ իրոք, հունիսի վերջերին նրանք երևացին, բայց ավելի քիչ։

Հունիսի վերջերին կատարվեց երկրորդ քաղհանը։ Այդ ժամանակ աշնանացանն արդեն այնքան էր աճել, բարձրացել և հզորացել, որ մոլախոտերի հետագա առաջ գալը այլևս վտանգ չէր ներկայացնում։

Քաղհանից հետո Մարիամի օղակն սկսեց պայքարը դաշտային մկների դեմ։ Նրանք մկան բները ջուր էին լցնում, կիսախեղդ եղած մկները դուրս էին գալիս բներից, որոնց ոչնչացնում էին տեղն ու տեղը։ Նրանք մկների դեմ պայքարում էին նաև մկնդեղի միջոցով։

Երբ ցորենը հասկակալեց, նշմարելի դարձան նաև դաշտամոլախոտային աշորայի (շալդարի) հասկերը, որոնք աշնանացանի մեջ նույնպես մոլախոտ են համարվում։ Դրանց քաղհանումը կվնասեր նաև ցորենին՝ արմատահան կաներ ցողունները։ Ուստի օղակի անդամները մկրատներով մեկ առ մեկ կտրատում էին աշորայի հասկերը և դրանք հեռացնում դաշտերից։

1946 թվականի ամռանը անձրևային եղանակները նպաստավոր պայմաններ ստեղծեցին «ժանգի» երևալու համար։ Տեղ-տեղ ցորենը պառկեց, որը պատճառ հանդիսացավ բերքի որոշ կորստի։

—Ափսոս որ,—ասում է Մարիամը,—«ստեպնյաշկա» սորտն իր մի շարք առավելությունների հետ միասին ժանգադիմացկուն չէ։ Լավ կլիներ այդպիսի մի սորտ ունենալ։



# ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ

Սկսեց հասունանալ ցորենը, ոսկեզօծվեցին արտերը, ամրացավ հատիկը հասկի մեջ։ Սկսվում է գյուղատնտեսական աշխատանքների ամենապատասխանատու շրջանը՝ բերքահավաքը։ Այժմ ամբողջ խնդիրն այն է, որ հավաքվի քրտնաջան աշխատանքի առատ պտուղը։

Օգոստոսի 6-ին սկսվեց հունձը։ Անհրաժեշտ էր արագ կատարել այդ գործը և օղակը այն կատարեց երեք օրում։ Հունձը կատարեցին գերանդիներով, որից հետո հավաքեցին, խուրձ արին հնձածը։ «Ո՛չ մի հասկ չթողնել գետնին»,—այս էր օղակի սոցմրցման պարտավորություններից մեկը, և նրանք մեկ առ մեկ հավաքում էին գետնին ընկած հասկերը։ Խուրձերը կրում են կալսման համար։ Կալսումը կատարվեց հենց դաշտում, կալսիչ մեքենայով, օգոստոսի 11-ին։

Օղակի անդամների և նրա ղեկավար Մարիամ Մարտիրոսյանի ուրախությանը չափ ու սահման չկար։ Նրանք կատարել և գերակատարել էին սոցիալիստական մրցության պայմանագրով ստանձնած իրենց պարտավորությունները։ Տասը հեկտարից նրանք ստացան 395 ցենտներ մաքուր, բարձր որակի ցորեն—յուրաքանչյուր հեկտարից 39,5 ցենտներ (247 փութ)։ Եվ, որովհետև Մարիամի օղակի ստացած ցորենը բարձրորակ և առողջ էր, կոլխոզի վարչությունը որոշեց այն պահել որպես սերմացու։

***

Մարիամ Մարտիրոսյանի բարձր բերքի ցուցանիշների համեմատությունը կոլխոզի միջին ցուցանիշների հետ, տալիս է հետևյալ պատկերը.

| ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԸ | Մարիամ Մարտիրոսյանի օղակի ցանքերում (միջինը) | Կոլխոզի ցանքերում (միջինը) |
|---|---|---|
| 1. Բույսերի բարձրությունը | 135 սանտիմետր | 102 սանտիմետր |
| 2. Թփակալումը (ցողունների թիվը մեկ թփի վրա) | 8 հատ | 3 հատ |
| 3. Հասկի երկարությունը | 9 սանտիմետր | 5 սանտիմետր |
| 4. Հատիկների քանակը մեկ հասկի մեջ | 42 հատ | 24 հատ |
| 5. Հազար հատիկի քաշը | 45,5 գրամ | 33,6 գրամ |
| 6. Միջին բերքատվությունը | 39,5 ցենտներ | 9,34 ցենտներ |

Այս աղյուսակը պարզ ցույց է տալիս, որ Մարիամ Մարտիրոսյանի օղակի կիրառած միջոցառումները տվել են հրաշալի արդյունք, որն արտահայտված է բոլոր ցուցանիշների մեջ։ Այդ բոլորը խելացիորեն մտածված և հմտորեն կիրառված ագրո-ձեռնարկումների կոմպլեքսի արդյունքն են։

Չի կարելի բարձր բերք ստանալ, եթե չի կատարվում ագրո-ձեռնարկումների լրիվ կոմպլեքսը։ Չիթհանքովի Բուդյոննու անվան կոլխոզում (կոլխոզի նախագահ Ն. Միքայելյան) ցորենի բարձր բերքի օղակների կիրառած ագրո-ձեռնարկումները և ստացված բերքը դրա լավագույն ապացույցն են։



ՑՈՐԵՆԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԻ ՕՂԱԿՆԵՐԻ ԿԻՐԱՌԱԾ ԱԳՐՈ-ՁԵՌՆԱՐԿՈՒՄՆԵՐՆ ՈՒ ՍՏԱՑՎԱԾ ԲԵՐՔԸ

| Օղակավարի անունը և ազգանունը | Տարածությունը հեկտարներով | Սերմացուի հատընտիր զտում | Խորը վար | Ցել: Սև | Ցել: Վաղ | Ցելի կուլտիվացիա: 2 անգամ | Ցելի կուլտիվացիա: 1 անգամ | Պարարտացում խառն աղբով | Լրացուցիչ սնուցում | Աշնանացանի փոցխում | Քաղհան | Բերքը ցենտներներով |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Մարիամ Մարտիրոսյան | 10 | + | + | + | — | + | — | + | + | + | + | 39,5 |
| Օֆիկ Մաղոյան | 10 | + | + | — | + | + | — | + | + | + | + | 38,0 |
| Անուշ Բոյաջյան | 6 | — | + | — | + | + | — | + | + | + | + | 32,0 |
| Նվարդ Ասլանյան | 4 | — | + | — | + | — | + | + | — | + | + | 20,0 |
| Էմմա Գալստյան | 6 | — | + | — | + | — | + | + | — | + | + | 18,0 |

ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ՝

\+ Նշանը կատարված ագրոձեռնարկումն է,
— Նշանը՝ չկատարված։

Այս աղյուսակից երևում է, որ Էմմա Գալստյանի և Նվարդ Ասլանյանի օղակները կիրառելով խորը վար, վաղ ցել, միանվագ կուլտիվացիա, պարարտացում խառն աղբով, ցանքի փոցխում և քաղհան, ստացել են՝ առաջինը — 18 ցենտներ, իսկ երկրորդը — 20 ցենտներ ցորենի միջին բերք։

Անուշ Բոյաջյանի օղակը այդ ձեռնարկումներից բացի, կիրառել է նաև վաղ ցելի կրկնավար, կուլտիվացիա և աշնանացանի լրացուցիչ սնուցում, որի շնոր-

հիվ նա բերքատվությունը հասցրեց 32 ցենտների։

Լենինի շքանշանակիր Օֆիկ Մաղոյանի օղակը այդ բոլորից բացի կատարել է սերմացուի հատընտիր զտում և հասել է ավելի բարձր արդյունքի. նրա օղակի միջին բերքը կազմում է 38 ցենտներ։

Իսկ Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանի օղակը, որը վարպետորեն ու բարձրորակ կատարելով այդ բոլորը, օգտագործեց նաև սև ցելի առավելությունները, հասավ Ռեսպուբլիկայում ռեկորդային բերքի՝ ստանալով հեկտարից 39,5 ցենտներ բարձրորակ ցորեն։

Լավ աշխատանքն իր լավ պտուղները տվեց։ Մարիամ Մարտիրոսյանը 1946 թվականին վաստակեց 262 աշխօր, որի դիմաց նա ստացավ 917 կիլոգրամ ցորեն կոլխոզի միջին հասույթից և, որպես բարձր բերք ստացող, նրան լրացուցիչ վարձատրություն տվեցին ևս 393 կիլոգրամ ցորեն։ Այսպիսով, Մարիամ Մարտիրոսյանը 1946 թվականին ստացավ 1310 կիլոգրամ ցորեն, չհաշված այլ մթերքները։

***

Մեր Պարտիան առաջնակարգ նշանակություն է տալիս գյուղատնտեսության ամենաարագ զարգացման ու վերելքի գործին, որպես ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հաջող զարգացման և ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարելավումն ապահովելու անհրաժեշտ պայման։ Եվ այդ շատ լավ է հասկացել ու փայլուն կերպով կենսագործում է կոմերիտուհի Մարիամ Մարտիրոսյանը։ Նա չի հանգստանում իր ձեռք բերած հաջողություններով. նա իր օղակով պարտավորություն է ստանձնել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 30-րդ տարեդարձը դիմավորել է՛լ ավելի բարձր ցուցանիշներով։

Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ Մարտիրոսյանը մեկն է սոցիալիստական գյուղատնտեսության նովատորներից, որի փայլուն օրինակին պետք է հետևեն բոլոր կոլտնտեսականները։



Խմբագիր՝ Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

ՎՖ 01035, պատվեր № 459, տիրաժ 10000.
Ստորագրված է տպագրության 27/III. 1947 թ.
Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Պոլիգրաֆ. և Հրատ վարչության № 2 տպարան, Երևան.